Քաջ բառի ստուգաբանությունը. Հայերենագիտության արդի խնդիրներ. Երևան, 2018, 87-91:

# ՔԱՋ ԲԱՌԻ ՍՏՈՒԳԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Արմեն Պետրոսյան

ՀՀ ԳԱԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտ

Ագաթանգեղոսի մոտ (127) Տրդատ արքայի խոսքում ասվում է՝ «քաջութիւն հասցէ ձեզ ի քաջէն Վահագնէ»: Ուրեմն, քաջը Վահագնի մակդիրն է՝ նա է երկրային քաջերի դիցաբանական անձնավորումը և առաջնորդը: Իսկ քաջերը միայն քաջ ռազմիկները չեն: Այդպես է կոչվում և առասպելական արարածների մի ամբողջ դաս, նոր հայերեն՝ քաջքեր: Նոր բանահյուսության մեջ քաջքերը, շատ առումներով, կարծես նույնական են վիշապներին ու չար ոգիներին՝ չարքերին[1]: Բայց հնում այդպես չի եղել: Եղած նյութի հիման վրա հնարավոր է հետևյալ վերակազմությունը:

Հնդեվրոպական հասարակություններում էական դեր են կատարել սովորաբար գերմանական Männerbund տերմինով կոչվող, իրենց աստծու և իրար հետ երդումով կապված պատանի որսորդ-ռազմիկների ծիսական հրոսակախմբերը, որոնց վայրի, դիվական հատկանիշներ են վերագրվել: Սրանց առասպելաբանական արտացոլումներն են, օրինակ, հնդկական Ինդրա և Ռուդրա աստվածների հետևորդ մարուտները և ռուդրաները, սկանդինավյան Օդինի անդրաշխարհիկ զորքը՝ էյնհերիները, իռլանդական Ֆիննի որսորդ-ռազմիկների խումբը՝ ֆիանան և այլն[2]: Մեծագույն Քաջը՝ Վահագնը, պիտի լիներ առասպելական քաջերի աստվածային առաջնորդը (ինչպես, ասենք, Ռուդրան՝ ռուդրաների)[3]:

Հնդեվրոպական համատեքստում հայկական Վահագնին առավել մոտ կերպարը հնդկական ամպրոպի աստված Ինդրան է: Ինդրան իր հիմնական առասպելում հաղթում է Վրտրա օձ-վիշապին և այդ պատճառով հաճախ կոչվում է Vṛtrahan «Վրտրային սպանող» մականունով (այդպես է կոչվել նաև այն ամենը, ինչ հաղթական է իր բնույթով՝ օրինակ, Ագնի, Սոմա, Սարասվատի աստվածները): Այս կերպարի իրանական զուգահեռներն են ավեստ. Vərəθraγna-ն, հին պրսկ. *Varθragna-ն կամ *Vṛθragna-ն, պարթև. *Varhragn-ը, որից է ծագում հենց Վահագն անունը[4]: Իհարկե, հայկական Վահագնի անվան և կերպարի ուղղագիծ համադրությունը հնդկական Ինդրա-Vṛtrahan-ի հետ ճիշտ չէ,

1 Քաջքերի վերաբերյալ տե՛ս Ղ. Ալիշան, Հին հավատք կամ հեթանոսական կրոնք հայոց, Վենետիկ 1895, էջ 191-197. Մ. Աբեղյան, Երկեր, հ. Է, Երևան 1975, էջ 85-89. հ. Ը, Երևան, 1985, էջ 193-196. Л. А. Абраамян, первобытный праздник и мифология, Ереван, 1983, с. 143-146. А. Е. Петросян. Армянские духи каджи: образ и название. Вопросы ономастики, 2018, № 1, 51-64. A. Y. Petrosyan. From Armenian Demonology: the K'aǰs. Journal of Indo-European Studies 46 (2018), 206-218:

2 Հնդեվրոպական Männerbund-ի վերաբերյալ տես K. Kershaw. The One-Eyed God: Odin and (Indo-) Germanic Männerbünde. Washington D.C. 2001, խնդրի վերաբերյալ նախորդ գրականությամբ:

3 Männerbund-ի հայկական առասպելաբանական արտացոլումների վերաբերյալ տե՛ս Ա. Պետրոսյան. Հայոց ազգածագման հարցեր ավանդական տվյալների քննության լույսի տակ. Պատմա-բանասիրական հանդես, 2003, 2, էջ 190-198, գրականությամբ: Վահագնի հետևորդ ռազմիկների առնչությամբ հետաքրքիր է նշել, որ ուրարտական դիցարանից էլ հայտնի են գերագույն աստված Խալդիի, ամպրոպային Թեյշեբայի և, թերևս, արևի աստված Շիվինիի զորքերը, տես Ս.Հմայակյան. Վանի թագավորության պետական կրոնը. Երևան, 1990, էջ 29:

քանի որ Վահագնի անունը իրանական փոխառություն է: Սակայն վաղուց ի վեր նկատված է, որ «Վահագնի երգի» լավագույն, ակներև զուգահեռները ևս ի հայտ են գալիս հնագույն հնդկական հիմներում՝ Վեդաներում[5]: Իսկ Վահագնի ուղեկցորդ քաջերի լավագույն զուգահեռները մարուտները և ռուդրաներն են (սրանք երկուսն էլ հաճախ հանդես են գալիս որպես Ինդրայի զորքեր)[6]:

Քաջ բառը հին հայերենում ունի մի շարք նշանակություններ՝ «ուժեղակ՝ առաւել աջով», «աջող», «աջողակ ուժով», ապա և՝ «կորովի», «հզոր, զորավոր», «կտրիճ», «բարի», «լավ, ընտիր», «դյուցազն», «հերոս», «ոգիների մի դաս», «դև» ևն, որոնցով հսկայական քանակությամբ բառեր կան կազմված[7]: Ըստ Հ. Աճառյանի բառի նախնական իմաստն է «լավ», որից զարգացել են մյուս նշանակությունները[8]: Իրոք, հայկական ավանդույթում հենց այդպես՝ «լավ» են անվանում որոշ ոգիներ՝ *մեզանե լավեր, մեզնե աղեկներ, աղեկ մանուկ*[9]: Հատկանշական է, որ այդպես են կոչվում ոգիներին նաև որոշ այլ լեզուներում՝ պրսկ. *az mā behtarān* «մեզանից լավեր», գերմ. *Gude*[10], հմմտ. և հնդկական *վասու* և *սադհյա* ոգիների անվանումները (տե՛ս ստորև): Աճառյանը, ներկայացնելով *քաջ* բառի իրեն հայտնի ստուգաբանությունները, չի ընդունում ոչ մեկը: Հետագայում բառի նոր ստուգաբանություն է առաջարկել Օսվալդ Սեմերենյին՝ կապված սողդ. *krj*, *kj* «հրաշք» արմատի հետ (հմմտ. և իրան. *kāra* «ուժ, իշխանություն», օս. *karz* «ուժեղ»)[11]: Այս ստուգաբանությունը, թեև հիշվում է որոշ գործերում, մտահայեցողական է և անապացուցելի[12]: Բառն անհայտ ծագման է համարում և Գևորգ Ջահուկյանը[13]:

Ստորև ներկայացնենք մեր ստուգաբանությունը: Հոլգեր Պեդերսենը դեռևս 1906թ. առաջարկել է ստուգաբանություն, կապված *աջ* բառի հետ, **sw-ak’syo-* նախաձևից[14]: Հնդեվրոպական **sw*-ն հայերենում կանոնավոր դառնում է *ք*- (հմմտ. քուն < **swopno-*, *քոյր* < **swesōr* ևն), բայց *աջ* բառի

---

4 Տե՛ս Հ. Աճառյան. Հայոց անձնանունների բառարան, հ. 5, Երևան, 1962, էջ 8-9. Encyclopaedia Iranica. Vol. II, London, 1987, p. 459:

5 Н.О. Эмин, Вахагн-Вишапаках' армянской мифологии есть Индра-Vritrahan Риг-Веды. Исследования и статьи Н. О. Эмина. М., 1886, с. 82-83. Մ. Աբեղյան. Երկեր, հ. Ը, էջ 110-116. տե՛ս և G. Dumézil. The Destiny of the Warrior. Chicago, London, 1970, p. 129-132:
6 Քաջքերի և մարուտների կապի վերաբերյալ տե՛ս Մ. Աբեղյան, Նշվ. աշխ., հ. Ա, Երևան, 1965, էջ 154:
7 Նոր բառգիրք հայկազեան լեզուի, Վենետիկ, 1836 (= Երևան 1979), հ. II, էջ 981-990:
8 Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան (այսուհետև՝ ՀԱԲ), հ. IV, Երևան, 1979, էջ 554-555:
9 Ղ. Ալիշան, Հին հաւատք կամ հեթանոսական կրօնք հայոց, Վենետիկ 1895, էջ 205. Մ. Աբեղյան, Նշվ. աշխ., հ. Ա, էջ 154, հ. Է, Երևան, 1975, էջ 86: Հատկանշական է, որ *մանուկ* բառը ևս ունի «պատանեկան Männerbund-ի անդամ» իմաստը, տե՛ս A. Y. Petrosyan. Armenian Traditional Black Youths: the Earliest Sources. Journal of Indo-European Studies 39 (2011), № 3 & 4, p. 342-354.
10 Գ. Ս. Ասատրյան, Miscellanea Demonologica, Իրան-նամե, 1995, № 4–5, էջ 30. Մ. Աբեղյան, Երկեր, հ. I, էջ 154:
11 O. Szemerényi. Iranica III (Nos. 32–43). W. B. Henning Memorial volume. London, 1970, p. 424–425.
12 J. Russell. Zoroastrianism in Armenia. Cambridge MA, London, 1987, p. 453; Գ. Ասատրյան. Miscellanea Demonologica. Իրան-նամե, 1995, № 4–5, էջ 30; B. A. Olsen. The Noun in Biblical Armenian: Origin and Word-Formation. Berlin/New York, 1999, p. 966:
13 Գ. Ջահուկյան. Հայերեն ստուգաբանական բառարան, Երևան 2010, էջ 777:
14 H. Pedersen Kleine Schriften zum Armenischen. Hildesheim/New York, 1982, S. 210.

ծագումը հնդեվրոպական *ak’syo-ից ժամանակակից պատկերացումների համաձայն անընդունելի է: Ներկայումս այն ստուգաբանում են *s(e)Hdh-yo- կամ *seh₂dh-yo- նախաձևերից, կապված հին հնդ. sādhati «հաջողեցնել, հասնել (նպատակին)», sādhu- «ճիշտ, ստույգ», «ուղիղ», «լավ», sādhyā «հաջողակ, նպատակին հասած» ևն[15].

«Ռիգվեդայի» հիմներում Ինդրան և մարուտները բազմիցս կոչվում են sva-ով սկսվող ածականներով, որոնք հանգում են հնդեվրոպական *swo-ին «յուր, սեփական», «ինքը», ինչպես օրինակ svadhā «ինքնտիպ», svayuḥ «անկախ», svarāj «ինքնաղեկավարող, ինքնակալ»», svayaśastaraḥ «ինքնափառք/փայլուն», svakṣatra «ինքնիշխան, անկախ», svatavas «ինքնուժեղ», svabhānu «ինքնալուսավոր», svapati «ինքնատեր»[16]: Այսպես, մի հիմնում (III.45.5) ասվում է. Svayurindra svarāj asi smaddiṣṭiḥ svayaśastaraḥ... «Օ Ինդրա, դու ինքնագո ես (svayuḥ), ինքնակալ (svarāj), քո ամենափայլ պայծառությամբ (svayaśastaraḥ)...»[17]:

Ըստ այդմ, քաջ-ը կարելի է մեկնաբանել որպես այդ հնդկերեն բառերին զուգահեռ մի կառույց՝ *swo-sHdhyo- «ինքը/յուր + «աջ/հաջող», «ճիշտ», «լավ»[18]: Հատկանշական է, որ Նոր հայկազյան բառարանում, ինչպես տեսանք, որպես *քաջ* բառի առաջին նշանակություններ հիշվում են «ուժեղակ՝ առաւել աջով», «աջող», «աջողակ ուժով», որտեղ շեշտվում են *աջ* և *աջող* բառերը: Ի միջի այլոց, հին հնդկական ավանդույթում հայտնի է Ինդրային ստորադաս աստվածությունների մի դաս, նմանատիպ անվանումով՝ vasu «լավ, բարի»[19]: Սակայն առավել հետաքրքիր է հնդկական աստվածությունների մեկ այլ դասի անվանումը՝ sādhya[20]: Սրանք ծեսերի և աղոթքների պահապաններ են, որոնց անվանումն ամբողջովին համընկնում է հայ. *աջ*-ի հետ:

Հայոց քաջ(ք)երի հետ նույնական են վրաց քաջիները (ქაჯი, վերջին *ի*-ն վրաց. ուղղական հոլովի վերջավորությունն է), հայտնի արդեն Ռուսթավելու պոեմից[21]: Նույն կերպարները հայտնի են նաև օսերի մեջ, *կաճի* և *կաջի* անուններով (ինչպես ցույց է տալիս բառավերջի *ի*-ն, փոխառությունը կատարվել է վրացերենից)[22]: Ավարերենում էս կան ոգիների նմանահունչ անուններ՝ *քաժ, քարժ/քարժին* «բարեբեր օձ», «տնային բարի ոգի»[23], որոնք, տեսականորեն, կարող են կապված լինել *քաջ, քաջի* և *կաճի* ձևերի հետ (թեև պետք է նշել, որ բավական տարբեր են և՛ կերպարները, և՛ անվանումները):

---

15 ՀԱԲ I, Երևան, 1971, էջ 246. M. Mayrhofer. Etymologisches Wörterbuch des Altindoarischen 2. Heidelberg, 1996. S. 722–723; H. K. Martirosyan. Etymological Dictionary of the Armenian Inherited Lexicon. Leiden/Boston, 2010, p. 100:

16 G. Dumézil. Նշվ. աշխ., էջ 62–63.

17 Ահա այդ տողի անգլերեն և ռուսերեն թարգմանությունները. Indra, self-ruling Lord art thou, good Leader, of most glorious fame (Sacred Writings: Hiduism: the Rig Veda. Trans. R. Griffith, N. Y., 1992, p. 186). О Индра, ты самосущий, ты самодержец, со (своим) наставлением, со своим самым ярким блеском (Ригведа: мандалы I–IV. Перевод Т. Я. Елизаренковой, М., 1989, с. 336).

18 Տեսականորեն հնարավոր է այս բառերի համար կապ ենթադրել *su- «լավ» արմատի հետ, բայց դրա համար բավարար հիմք չկա, տե՛ս G. Dumézil, Նշվ. աշխ., էջ 62, ծան. 17:

19 M. Monier-Williams. A Sanskrit-English Dictionary. Oxford 1899, p. 930; Мифы народов мира (далее – МНМ), т. 1, М., 1980, с. 218–219.

20 J. Dowson. Classical Dictionary of Hindu Mythology and Religion, Geography, History, and Literature. London 1888, p. 271; Monier-Williams, Նշվ. աշխ., էջ 1202:

21 МНМ 1, 607.

22 В. И. Абаев. Историко-этимологический словарь осетинского языка, т. 1, М.-Л., 1958, с. 566–567.

23 МНМ 1, с. 607; Свод памятников фольклора народов Дагестана, т. 4: Мифологическая проза, М., 2012, с. 135–136, 247–248.

Կապադովկյան հունարենում, որտեղ շատ կան փոխառություններ հայերենից, քաջքերն իրենց անունն են թողել κατσόρα /կացո՛ռա/ «մղձավանջ, չար ոգի» բառում (հայոց արևմտյան բարբառներում *քաջ*-ն արտասանվում է որպես *քաչ*, որը նոր հունարենում, որտեղ չկան *ք* և *չ* հնյունները, կարող էր ընկալվել հենց որպես *կաց*)[24]: Ըստ Ջեյմս Ռասելի, հունական դևերի մի տեսակի καλικάντζαρος անվանումը ևս կարող է կապված լինել նույն արմատի հետ, սկզբնական καλή «լավ, գեղեցիկ» մասով, որը համահունչ է հայ. «մեզանից լավերը» ձևի հետ[25] (այս կարծիքը, իհարկե, վարկածային է): Այս նույն ոգին, ի միջի այլոց, հայտնի է նաև թուրքերի և հարավային սլավոնների մոտ՝ թուրք. *karakoncolos*, բուլղ. *караконджул*, մակեդ. *караконцол*, սերբ. *караконџула*:

24 ՀԱԲ IV, էջ 555:
25 J. Russell. Նշվ. աշխ., էջ 453: